Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1947

„ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ“ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ



## ՋՐՈՒՅՑ ԸՆՏՐԱԿԱՆ ՕՐԵՆՔԻ ՄԱՍԻՆ



## Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։



# ԱԳԻՏԱՑԻԱ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆՊԱՐՏԻԱԿԱՆՆԵՐԻ ԲԼՈԿԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

*Նախընտրական ժողովներում սկսվել է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուների առաջադրումը։ Կոմունիստների և անպարտիականների բլոկի առաջին համաժողովրդական թեկնածուն է ժողովուրդների մեծ առաջնորդ, հայ ժողովրդի ազատարար մեծ Ստալինը, որը մեծ Լենինի հետ միասին ստեղծեց աշխարհում առաջին Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը, ամենադեմոկրատական կարգերն աշխարհում։ Նախընտրական ժողովները վեր ենածվում բուռն ցույցերի՝ բոլշևիկյան պարտիայի և ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը է՛լ ավելի ամուր համախմբվելու համար։*

*Նախընտրական ժողովներում դեպուտատության թեկնածուներ են առաջադրում ընկեր Ստալինի հավատարիմ զինակիցներ՝ ընկ. ընկ. Մոլոտովին, Ժդանովին, Միկոյանին, Անդրեևին, Վորոշիլովին, Բերիային, Կագանովիչին, Խրուշչևին, Մալենկովին, Շվերնիկին, Կուզնեցովին, Պատոլիչևին, Վոզնեսենսկուն, Բուլգանինին, Կոսիգինին։*

*Աշխատավորների նախընտրական ժողովներում դեպուտատության թեկնածու են առաջադրել Հայաստանի բոլշևիկների ղեկավար, կայուն բոլշևիկ ընկ. Գր. Հարությունյանին։*

*Դեպուտատության թեկնածուներ են առաջադրում նաև բանվորներին, կոլխոզնիկներին, գիտության և ար-*

վեստի աշխատողներին, մեր ռեսպուբլիկայի անվանի մարդկանց։

Նախընտրական կամպանիայի է՛լ ավելի պատասխանատու շրջանն ենք անցնում։ Պարտիական կազմակերպությունները պետք է ծավալեն ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքները։ Բոլշևիկյան ագիտացիա պետք է մղել կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։

Ագիտատորները պետք է հանդես բերեն մեծ նախաձեռնություն և շնորհք իրենց աշխատանքում, օգտագործեն ագիտացիայի բոլոր ձևերն ու մեթոդները՝ ագիտացիան է՛լ ավելի բովանդակալից դարձնելու համար։ Ագիտպունկտերը պետք է դարձնել մասսայական-քաղաքական աշխատանքների իսկական օջախներ ընտրական տեղամասերում։

Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի ներքո խոշոր նվաճումներ է ձեռք բերել Հայկական ՍՍՌ-ն արդյունաբերության և ռազմաի ասպարեզներում։ Ավելի խոշոր են լինելու այդ նվաճումները նոր հնգամյակում։ Այսօր մենք հրապարակում ենք նյութեր այդ առթիվ։ Ագիտատորները պետք է օգտագործեն այդ նյութերը իրենց զրույցների ընթացքում։

Մեծ բերկրանք է բաժին ընկել հայ ժողովրդին։ Ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինը, ընկերներ Մոլոտովը, Միկոյանը տվել են իրենց համաձայնությունը քվեարկվելու մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանի ընտրական օկրուգներում։

Ագիտատորնե՛ր, ձեզ վրա պատվավոր և պատասխանատու խնդիր է դրված՝ ագիտացիա մղել կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության ասպարեզում անցած 26 տարվա ընթացքում մեր ձեռք բերած նվաճումները ինչպես հարկն է գնահատելու համար բավական է նշել, որ Հայաստանի Նախառևոլյուցիոն ամբողջ արդյունաբերությունը ներկայացված է եղել պղնձահանքային և գինու-կոնյակի ձեռնարկություններով, ինչպես նաև բամբակ, կաշի վերամշակող մի քանի տնայնագործական ձեռնարկություններով։ 1919 թվին արդյունաբերության արտադրանքը Հայաստանում կազմել է ընդամենը 1,7 միլիոն ռուբլի։ Բայց այդ աննշան արդյունաբերությունը տխրահռչակ դաշնակների տիրապետության տարիներին հասավ քայքայման և ավերման վիճակի։

## ԱՌԱՋԱՎՈՐ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՅԻ ԱՃԸ

Սովետական իշխանության գոյության 26 տարվա ընթացքում Հայաստանը միանգամայն կերպարանափոխվեց և հետամնաց ագրարային երկիրը դարձավ առաջավոր ռեսպուբլիկա՝ առաջավոր ինդուստրիայով և բարձր զարգացման հասած գյուղատնտեսությամբ։

Արդյունաբերության տեսակարար կշիռը, որը 1913 թվին կազմում էր 23,9 տոկոս, ներկայումս հասել է 78 տոկոսի։

Արդյունաբերական արտադրանքի ծավալը 1913 թվի համեմատությամբ աճել է 23 անգամ, իսկ 1919 թվի համեմատությամբ՝ 280 անգամ։

Երկրի հարուստ ջրային ռեսուրսների օգտագործման շնորհիվ Հայաստանը ծածկվել է հիդրոէլեկտրակայանների խիտ ցանցով։ Էլեկտրակայանների կարողությունը 1913 թվի համեմատությամբ աճել է 39,4 անգամ, իսկ 1919 թվի համեմատությամբ 81 անգամ։

Էժան հիդրոէլեկտրոէներգիայի հիման վրա ստեղծվել է քիմիական խոշոր արդյունաբերություն։ Ընդլայնվել և հիմնովին վերակառուցվել է պղնձի արդյունաբերությունը։

Քիմիական և պղնձի արդյունաբերության զարգացումը համաքայլ է ընթացել հանքային հումք հայտնաբերելու ասպարեզում լայն ծավալված երկրաբանական հետախուզական աշխատանքների հետ։

Պղնձի պաշարները նախառևոլյուցիոն մակարդակի համեմատությամբ աճել են ավելի քան 40 անգամ։

Միայն վերջերս հայտնաբերվել և ուսումնասիրվել են արդյունաբերական նշանակություն ունեցող մոլիբդենի հանքավայրերը, ինչպես նաև մագնիումի և ալյումինի հումքի հանքավայրերը։

Քիմիական արդյունաբերության զարգացման համար մեծ նշանակություն ունեն սովետական իշխանության ժամանակ հետախուզված քիմիապես մաքուր կրաքարերի հանքավայրերը։ Կրաքարերի պաշարները հետախուզված տեղամասերում կազմում են 13,7 միլիոն տոննա։

Հետախուզվել և մասնակիորեն շահագործվում են նաև քրոմ պարունակող երկաթաքարերը, տուֆերը, բարձրորակ մարմարիտները, հրակայուն կավը և ուրիշ հանքային ու ոչ հանքային հանածոները։

Սովետական իշխանության տարիներին կառուցվել են թեթև և սննդի արդյունաբերության տասնյակ ձեռնարկություններ, որոնք օգտագործում են տարեց-տարի ավելացող գյուղատնտեսական հումքը։ Նման ձեռնարկությունների թվին են պատկանում բամբակազտիչ և տեքստիլ ձեռնարկությունները, տրիկոտաժի, կոշիկի ֆաբրիկաները, Ջեթ-օճառի գործարանը, ծխախոտի



արդյունաբերության ձեռնարկությունները, մսի կոմբինատները, կաշեգործարանը, մետաքսի գործարանը և այլն։

Մեծ հաջողություններ են ձեռք բերել կոնսերվի և գինու-կոնյակի արդյունաբերությունները։ Գինիների, կոնյակների և մրգեղեն պահածոների արտադրանքն իր որակի շնորհիվ արժանի հռչակ է վայելում ամբողջ Սովետական Միությունում։

Ռեսպուբլիկայում ստեղծվել է մետաղամշակման արդյունաբերություն։ Ներկայումս Հայաստանում գործում են ավելի քան 200 մեծ, միջակ և մանր ձեռնարկություններ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը այժմ թողարկում է ավելի քան 500 տեսակ զանազան արտադրանք։

Շինանյութերի խիստ հարուստ և բազմազան տեսակներ հնարավորություն են տվել ստեղծել շինանյութերի ինդուստրիալ արտադրություն, որը զգալի չափով նպաստել է անցած տարիների հաջող շինարարությանը։

Առանձնապես ուժեղ կերպով են զարգացել տեղական արդյունաբերությունը և արհեստագործական կոոպերացիան, որը թողարկում է լայն սպառման առարկաներ։ Արհեստագործական կոոպերացիայի զանազան ճյուղերի կողմից թողարկվող գորգերը, ոսկեղեն ու փորագրված իրերը վայելում են համաշխարհային հռչակ։

Մոտիկ ժամանակներս շահագործման են հանձնվելու պատերազմի տարիներին սկսված գործարանները, այն է՝ հանքային պարարտանյութերի, շաքարի, գինեգործական արդյունաբերության նոր ձեռնարկությունները, կաբելի գործարանը, հախճապակու գործարանը, հրակայուն կավի հզոր գործարանը, պոլիվինիլացետատի գործարանը, ալյումինի գործարանը և այլն, ինչպես նաև լայն սպառման առարկաներ արտադրող ձեռնարկությունները։

Հայրենական պատերազմի տարիներին Հայաստանի արդյունաբերությունը լավ է աշխատել։ Ամբողջ

արդյունաբերությունը ի սպաս դնելով պաշտպանությանը, Հայաստանում միաժամանակ կառուցվել և գործարկվել են այնպիսի նոր ձեռնարկություններ, ինչպիսիք են՝ դողերի, մոտոռավերանորոգման, ծծմբաթթվի, գյուղատնտեսական գործիքների, հիդրոգենիզացիայի գործարանները և մի շարք ուրիշ ձեռնարկություններ։

Ռազմաճակատի կարիքները սպասարկող արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքը չդադարեցնելու համար պետք եղավ սեփական ուժերով ու միջոցներով արտադրել շատ այնպիսի բաներ, որոնք առաջ ներմուծվում էին։ Դա վերաբերվում է ամենից առաջ պահեստի մասերին, մեր ձեռնարկությունների սարքավորմանը։

Նախքան պատերազմը մեր ռեսպուբլիկայում մետաղամշակման արդյունաբերությունը թույլ կերպով էր զարգանում։ Պատերազմի ընթացքում զգալիորեն առաջ մղվեց այդ ճյուղի զարգացումը։

Դրա հետ միաժամանակ հայտնաբերվեցին և օգտագործվեցին հումքի և վառելիքի տեղական ռեսուրսները (Ջաջուռի քարածուխը, Բասարգեչարի և Կալինինոյի տորֆը)։ Պատերազմի տարիներին քարածխի արտադրությունը ավելացավ 3,1 անգամ, տորֆինը՝ 2,4 անգամ։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի և կառավարության միջոցառումներով մեծ թափ հաղորդվեց լայն սպառման առարկաների արտադրությանը, տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի աշխատանքներին։

1945 թվին տեղական արդյունաբերության արտադրանքը 1940 թվի համեմատությամբ աճեց 99,6 տոկոսով, իսկ արհեստագործական կոոպերացիայի արտադրանքը համապատասխանորեն՝ 5,8 տոկոսով։

Տեղական արդյունաբերությունը և արհեստագործական կոոպերացիան զգալի աշխատանք կատարեցին հանդերձանքի և կոշկեղենի արտադրության ասպարեզում։ Պատերազմի տարիներին ռեսպուբլիկայում կազ-



մակերպվել է ավելի քան 200 նոր տեսակի արտադրանքի թողարկում։ Բանվորական ուժի պրոբլեմը, որը ինչպես հայտնի է պատերազմի տարիներին առանձնապես սրվում էր, նույնպես լուծվեց դրական կերպով։ Կանայք և երիտասարդությունը պատերազմի հենց առաջին օրերից կանգնեցին բարդ դազգահների մոտ և զուգակցելով ուսումն աշխատանքի հետ, արագորեն յուրացրին բարդ տեխնիկան։

Հայ ժողովուրդը թիկունքի աշխատանքը վերակառուցելու գործում իր պարտքը պատվով կատարեց Հայրենիքի հանդեպ։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԲՈՒՌՆ ՎԵՐԵԼՔԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Հետագա տնտեսական զարգացման ասպարեզում վիթխարի հեռանկարներ են բացվում Հայկական ՍՍՌ-ի առաջ նոր հնգամյակում։

Եղբայրական 16 ռեսպուբլիկաներից Հայկական ՍՍՌ-ն արդյունաբերական արտադրանքի աճման տեմպով Էստոնիայից և Ղազախստանից հետո գրավում է ՍՍՌ-ում երրորդ տեղը։ Մեր ռեսպուբլիկայում արդյունաբերության արտադրանքի ծավալը 1950 թվին 1940 թվի համեմատությամբ կաճի 2,1 անգամ, մինչդեռ ՍՍՌՄ-ի արդյունաբերության համախառն ամբողջ արտադրանքը այդ նույն ժամանակամիջոցում կաճի 48 տոկոսով։ Ռեսպուբլիկայում կապիտալ ներդրման ծավալը հավասար է մեկ միլիարդ 420 միլիոն ռուբլու։

Ինչպես Սովետական Միության, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ի համար առաջնահերթ խնդիր է հանդիսանում ռեսպուբլիկայում զարգացնել ծանր արդյունաբերությունը, որը հիմնականում ներկայացված է հետևյալ ճյուղերով՝ էներգետիկա, քիմիական արդյունաբերություն, գունավոր մետալուրգիա, մեքենաշինություն և էլեկտրաարդյունաբերություն։

Մեր ռեսպուբլիկայի էլեկտրիֆիկացման ասպարեզում սովետական իշխանության նվաճումները պարզ

կերպով երևում են հետևյալ ցուցանիշներից. 1945 թվին բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրոէներգիայի արտադրանքը 1913 թվի համեմատությամբ աճել է 74 անգամ, 1919 թվի համեմատությամբ 1870 անգամ։

1950 թվին կարտադրվի երկու անգամ ավելի շատ էլեկտրոէներգիա, քան 1945 թվին։

Ռեսպուբլիկայի հիդրոշինարարության բարձր տեմպերը պայմաններ կստեղծեն արդյունաբերության հետագա հզոր զարգացման համար։

Հայկական ՍՍՌ-ն նոր հնգամյակում էժան հիդրոէներգիայի հիման վրա ապահովում է քիմիական արդյունաբերության հետագա զարգացումը։

Կզարգանա կարբիդ-կալցիումի և նրանից ստացվող նյութերի արտադրությունը։ ՍԿ Սովպրենի արտադրանքը պետք է ավելացվի չորս անգամ։ Կաուչուկի արտադրության հետ միասին կաուստիկ սոդայի արտադրությունը հնգամյակի վերջում կհասցվի 12 հազար տոննայի։

Ապահովվում է ավտոդողերի արտադրության ընդլայնումը։ Դրանց արտադրանքը կհասցվի տարեկան 180 հազար հատի, 1945 թվի համեմատությամբ կաճի 32 անգամ։

Նոր հնգամյակի տարիներում հիմնականում կլուծվի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության կարիքները հանքային ամենագլխավոր պարարտանյութերով բավարարելու հարցը։ Շահագործման կհանձնվի հզոր, տեխնիկայի վերջին խոսքով կառուցված ազոտային պարարտանյութերի գործարանը Կիրովականում։ Կգործարկվի սուպերֆոսֆատի գործարանը տարեկան 15 հազար տոննա արտադրանքի կարողությամբ։

Հնգամյակի տարիներին պետք է ընդլայնվի Կիրովականի քիմիական կոմբինատը։ Ցեխի կարողությունը կեռապատկվի։ Կարբիդ-կալցիումից արտադրվելու են այնպիսի խիստ արժեքավոր նյութեր, ինչպիսիք են՝ քացախային ալդեհիդը, էթիլային սպիրտը և քացախային թթուն։



Նոր հնգամյակի տարիներին կապահովվի պղնձահանքի հանույթի հետագա ավելացումը, կոնցենտրատների և սև պղնձի արտադրությունը։

Մոտիկ ժամանակներս շահագործման կհանձնվի պղնձի զտման գործարանը, որը թողարկելու է էլեկտրոլիտիկ (զտված) պղինձ։ Այդ պղինձն անմիջականորեն օգտագործվելու է կաբելի և այլ արտադրությունների համար։

Հնգամյակում շահագործման կհանձնվի Քանաքեռի ալյումինի գործարանը, որը կծառայի որպես հիմնական բազա ռեսպուբլիկայում մետաղամշակման, մեքենաշինական և էլեկտրատեխնիկական արդյունաբերության հետագա զարգացման համար։

Հնգամյակում կավարտվի Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կառուցումը և կսկսվի Քաջարանի պղնձամոլիբդենային հանքերի շահագործումը, որը մետաղի իր հարուստ պաշարներով աչքի է ընկնում Սովետական Միության համանման հանքերի ասպարեզում։

Պատերազմի տարիներին սկսվեց հզոր կաբելի գործարանի կառուցումը։ Գործարանը թողարկելու է տարեկան 35 միլիոն ռուբլու կաբելային արտադրանք։

Կառուցվում է փոքր հիդրոտուրբինների գործարան, որը լիովին կապահովի հիդրոտուրբիններով ոչ միայն Հայաստանում կառուցվող, այլև մյուս ռեսպուբլիկաների գյուղական հէդրոկայանները։ Գործարանի կարողությունը կազմում է տարեկան 300 հիդրոտուրբին։ Կառուցվում է և շուտով կգործարկվի Ավտոտրակտորդետալի գործարանը տարեկան տասը միլիոն ռուբլու ավտոմոբիլային և տրակտորային պահեստամասերի թողարկմամբ, կոմպրեսորային գործարանը՝ 450 հատ կոմպրեսորի կարողությամբ, ժամացույցի գործարանը՝ տարեկան 25 միլիոն ռուբլու արտադրանքով։

Երևանի դազգահագործիքաշինական գործարանը 1950 թվին կթողարկի 500 հատ մետաղահատ դազգահ։ Բացի դրանից տեղական արդյունաբերության գծով

կկառուցվեն՝ էլեկտրոշարժիչ գործիքների գործարան, հեծանիվների, գործիքաշինական և մի շարք մանր մեխանիկական գործարաններ էջմիածնում, Կիրովականում, Գորիսում և այլն։

***

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946-1950 թվերի հնգամյա պլանի օրենքը նախատեսում է Հայկական ՍՍՌ-ում տեքստիլ, սննդի, թեթև արդյունաբերության այլ ճյուղերի հետագա զարգացումը։

Տեքստիլ արդյունաբերության գծով 1950 թվին նախատեսվում է թողարկել 44 միլիոն 800 հազար մետր բամբակեղեն գործվածք, 2 միլիոն 600 հազար մետր մետաքսեղեն գործվածք, 400 հազար մետր բրդեղեն գործվածք։

Ստալինյան հնգամյակների տարիներին ռեսպուբլիկայում արդեն ստեղծվել է զարգացած բամբակագործական արդյունաբերություն։

Հնգամյակի ընթացքում նախատեսվում է 1940 թվի համեմատությամբ բամբակեղեն գործվածքի արտադրությունն ավելացնել 68 տոկոսով։

Թեթև արդյունաբերության գծով նախատեսվում է զգալիորեն ավելացնել արտադրության ծավալը, որը խիստ կգերազանցի նախապատերազմյան մակարդակը։

1950 թվին կոշկեղենի թողարկումը 1940 թվի համեմատությամբ համարյա կեռապատկվի և հնգամյակի վերջում կկազմի երկու միլիոն 550 հազար զույգ։

Գուլպաների արտադրությունը կկազմի 15 միլիոն 400 հազար զույգ, այսինքն 1945 թվի համեմատությամբ կտա 59,9 տոկոս աճ։

Տրիկոտաժի և սպիտակեղենի արտադրությունը կավելանա համարյա երկու անգամ։

Նոր հնգամյակում Կիրովականում կկառուցվի և կհանձնվի շահագործման տրիկոտաժի գործարանը, Երևանում՝ կոշիկի 3-րդ գործարանը, Լենինականում՝



բարձր որակի գուլպաների գործարանը։ Գործարանների կառուցման հետ միասին հնգամյակում նախատեսվում է վերակառուցել և ընդլայնել Լենինականի գուլպայի և կոշիկի գործարանները, Երևանի կաշվի գործարանը, կարի ձեռնարկությունները և այլն։

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թվերի հնգամյա պլանի օրենքը նախատեսում է նաև արտադրանքի զգալի աճ սննդի արդյունաբերության ասպարեզում։

Նախատեսվում է թողարկման հետևյալ ծավալը սննդի արդյունաբերության հիմնական տեսակների գծով. բուսական յուղ 6.000 տոննա, շաքար 6.500 տոննա, խաղողի գինի 2.000 հազար դեկալիտր, միս 8,4 հազար տոննա, կենդանական յուղ 800 տոննա։

Նախատեսվում է նաև կոնսերվի արդյունաբերության, հացի, հրուշակեղենի, գլանակների արտադրության մեծ աճ և այլն։

Հնգամյա պլանով նախատեսվում է մրգեղենի վերամշակման, գինեգործական, շաքարի և ծխախոտի արդյունաբերության բուռն զարգացում։ Հոկտեմբերյանի շրջանում կոնսերվի հզոր գործարանի, Համամլվի շաքարի գործարանի, Աշտարակի «Խերես» գինու գործարանի կառուցման և Երևանի ու Արտաշատի գոյություն ունեցող գինեգործարանների ընդլայնման ու վերակառուցման, ինչպես նաև Երևանում կոնյակի նոր գործարանի կառուցման վերաբերյալ պարտիայի և կառավարության դիրեկտիվը լիակատար արտացոլում է գտել հնգամյա պլանում։

1950 թվին ռեսպուբլիկայի մսի արտադրանքը 1940 թվի համեմատությամբ կաճի 28 տոկոսով։ Առանձնապես մեծ աճ է նախատեսվում պանիրների և մանավանդ եվրոպական տեսակների (շվեյցարական, հոլանդական, ռոկֆոր, պեկորինո և այլն) մեծ աճ։

Հնգամյակում աճում է նաև անտառային արդյու-

նաբերության արտադրանքը։ Գործարար փայտանյութի արտահանությունը աճում է համարյա երկու անգամ, վառելափայտինը՝ մեկ ու կես անգամ, աղոցանյութինը՝ երկու անգամ։

Առանձնապես ընդլայնվում է կահույքի արտադրությունը։ Կահույքի ասպարեզում 1940 թվի համեմատությամբ աճը արտահայտվում է 347 տոկոսով։ Ռեսպուբլիկայում կահույքի թողարկման պլանը ապահովելու համար կառուցվում են կահույքի, ինչպես նաև ֆանեռայի նոր գործարաններ։

Արդյունաբերական, գյուղատնտեսական, ճանապարհային, բնակարանային, կուլտ-լուսավորական և կոմունալ շինարարության ասպարեզում հնգամյակում նախատեսված աշխատանքների վիթխարի պլանը առանձնապես կարևոր խնդիրներ է դնում շինանյութերի արդյունաբերության առաջ։

Շինանյութերի արտադրության համար ռեսպուբլիկայում եղած բնական հումքի խիստ հարուստ ռեսուրսները պետք է ի սպաս դրվեն հնգամյա պլանի կենսագործմանը։

Տուֆի, պեմզայի, բազալտի նոր հանքերի հայտնաբերումը և նրանց մեքենայացումը, աղյուսի, կղմինդրի, կրի, գաջի նոր գործարանների կառուցումը, շինանյութերի նոր տեսակների արտադրության ստեղծումը, ինչպես օրինակ՝ ասբոշիֆերային, պարկետային, երկաթեղեն իրերի, վաննայի արմատուրայի, վառարանային պատկանելիքների, վենտիլների և ծորակների արտադրությունը—այս բոլորը պետք է կազմեն շինանյութերի արտադրությամբ զբաղվող կազմակերպությունների աշխատանքի հիմքը։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ շինանյութերի մեծաքանակ արտադրությունը նախատեսում է շինանյութեր արտադրող մեծ թվով ձեռնարկությունների կառուցում։ Միայն շինանյութերի արդյունաբերության մինիստրության գծով նոր հնգամյակում նախատեսվում



է ընդլայնել և վերակառուցել Արթիկտուֆը, Անիպեմզան, Երևանի շինանյութերի գործարանը և այլն, ինչպես նաև կառուցել նոր ձեռնարկություններ՝ ասբոշիֆերային գործարան, կղմինդրի և աղյուսի նոր գործարաններ, կրի և գաջի գործարաններ ու շինանյութերի նոր գործարան։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946-1950 թ. թ. հնգամյա պլանի օրենքով Հայկական ՍՍՌ տեղական արդյունաբերության արտադրանքի ծավալը սահմանվել է 1950 թվին 50 միլիոն ռուբլի և արհեստագործական կոոպերացիայի գծով 110 միլիոն ռուբլի (1926-27 թվերի անփոփոխ գներով)։ Այդ նշանակում է, որ տեղական արդյունաբերության ձեռնարկությունների տարեկան արտադրանքը 1940 թվի համեմատությամբ աճում է վեց անգամ։ Միաժամանակ աճում է շրջանային և քաղաքային արդյունաբերության արտադրանքը, իսկ արհեստագործական կոոպերացիան հնգամյակի վերջում համարյա կկրկնապատկի արտադրանքի նախապատերազմյան մակարդակը։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԸ ԱՃԵՑ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՌԱՋԻՆ ՏԱՐՈՒՄ

Հայաստանի աշխատավորներն իրենց անձնուրաց աշխատանքով ձգտում են նորանոր արտադրական սխրագործությունների։ Մեր ռեսպուբլիկայի բանվորները, կոլխոզնիկները և ինտելիգենցիան Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրական կամպանիան նշանավորում են արտադրական նորանոր նվաճումներով։ 1946 թվին ժամկետից շուտ կատարեցին տարեկան պլանները՝ պղնձաձուլական, ցեմենտի գործարանների, Քանաքեռգէսի, Մեղրու Կոնսերվի, ծխախոտի ֆաբրիկայի... 

Մեր ռեսպուբլիկայի հիմնական ձեռնարկությունները 1945 թվի համեմատությամբ հնգամյակի առաջին

տարում տվել են արտադրանքի զգալի աճ, այն է՝ ծծմբաթթվինը՝ 148 տոկոս, պղնձի արջասպինը՝ 174,4 տոկոս, սուպերֆոսֆատինը՝ 232,5 տոկոս, դաղձահաշինությունը՝ 143,6 տոկոս, և պղնձինը՝ 122,9 տոկոս, պորտլանդ ցեմենտինը՝ 148,4 տոկոս, ավտոդողերինը՝ 265,5 տոկոս, գուլպաներինը՝ 132,7 տոկոս, սպիտակեղեն տրիկոտաժինը՝ 155,5 տոկոս, կոշկեղենինը՝ 132,5 տոկոս, օճառինը՝ 111,3 տոկոս, Կիրովականի գործարանի կարբիդ-կալցիումի արտադրությունը կազմում է 140,2 տոկոս։

Թողարկվող արտադրանքի քանակի ավելացման հետ միասին 1946 թվին բարելավվել են նաև արտադրանքի ասորտիմենտը և որակը։

Տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի սիստեմի գծով լայն սպառման առարկաների արտադրանքի աճման ընդհանուր ծավալը 1945 թվի համեմատությամբ 1946 թվին բարձրացավ 18 տոկոսով։

Մետաղյա ամանեղենի արտադրությունը 1946 թվին աճել է երկու անգամ։ 1946 թվին առաջին անգամ արտադրվել է 63 տոննա ալյումինե և 27 տոննա ցինկապատ ամանեղեն։ Սև ամանեղենի թողարկումը հասցվել է 111 տոննայի։

Մահճակալների արտադրանքը 1945 թվի համեմատությամբ 1946 թվին ավելացավ ավելի քան հինգ անգամ և հասցվեց 11300 հատի։ Տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի գծով 1946 թվին պատրաստվել է երկու և կես անգամ ավելի կահկարասիք, քան 1945 թվին։ Կարի արտելների և արհեստանոցների արտադրանքը (1926—27 թվերի անփոփոխ գներով հասցվել է 22,8 միլիոն ռուբլու 1945 թվի 18,3 միլիոն ռուբլու դիմաց։ Սպիտակեղենի և տրիկոտաժի արտադրանքը հասցվել է 1,3 միլիոն հատի, իսկ գուլպաների արտադրանքը ավելացել է մեկ ու կես անգամ։ Տղամարդկանց և կանանց գլխարկների արտադրությունը 1945 թվի համեմատությամբ ավելացել է երեք անգամ։ Ավելացել է նաև կոշիկների արտադրությունը։ Ընթացիկ տարում յուրացվել է մի շարք մանրող գործիքների, երեխաների հեծանիվների, սայլակների, խաղալիքների, ինչպես նաև երեսսրբիչների, սփռոցների, ծածկոցների և գալանտերիայի այլ ապրանքների արտադրությունը։



1946 թվի ընթացքում մասնակիորեն շահագործման են հանձնվել Երևանի կաբելի գործարանը, Երևանի Մահուդի գործարանը, լայն սպառման մետաղե իրերի գործարանը, Երևանի կահույքի գործարանը։ Արհեստագործական կոոպերացիայի գծով կազմակերպվել է 11 արտել։

Հայ ժողովուրդը իրեն հաշիվ է տալիս, գիտակցում է, որ մեր ժողովրդական տնտեսության վերականգնումը ու զարգացումը պահանջում է հաղթահարել բոլոր դըժվարությունները, մոբիլիզացնել բոլոր ուժերը, անձնուրաց աշխատանքով ոչ միայն կատարել, այլև գերակատարել ստալինյան նոր հնգամյա պլանը։

Լ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
(Հայկական ՍՍՌ Պետպլանի նախագահ)

# ՈՌՈԳՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԾԱՂԿՄԱՆ ՀԻՄՔՆ Է

Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելու հենց առաջին օրերից աշխատասեր հայ ժողովուրդը բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ սկսում է վերականգնել ռեսպուբլիկայի կիսաքանդ, լքված ոռոգիչ սիստեմները, ծավալել ոռոգիչ նոր շինարարություն։ Չէ՞ որ Հայաստանի աշխատավորները բռնակալական Պարսկաստանից, ցարական ինքնակալությունից և դաշնակների տիրապետության ժամանակաշրջանից ստացել էին ծանր ժառանգություն՝ քայքայված տնտեսություն։

Նախ քան սովետական իշխանության հաստատվելը, ոռոգումը Հայաստանում, որը ունեցել է ջրովի հողագործության շատ հին կուլտուրա, միանգամայն քայքայվել էր։ Հայ ժողովրդի երբեմնի շտեմարան Արարատյան դաշտավայրը ամայացել էր։

Սովետական իշխանության առաջին տարիներին սկսվեց եռուն աշխատանք ոռոգման ասպարեզում։ 1921-ից մինչև 1924 թիվը վերականգնվեց 430 ջրանցք՝ 1200 կիլոմետր ընդհանուր երկարությամբ։

Գոյություն ունեցող ոռոգիչ սիստեմը վերականգնելու հետ միասին սկսվեց ոռոգիչ ջրանցքների շինարարությունը։ Առաջինը սկսվեց Էջմիածնի ջրանցքի շինարարությունը, որը սկզբնապես նախատեսված էր 1.100 հեկտար տարածություն ոռոգելու համար, իսկ հետագայում ջրանցքի ընդլայնման և տեխնիկական բարելավման միջոցով ոռոգելի տարածությունը հասցվեց 2900 հեկտարի։



Ոռոգման գծով խոշոր շինարարություններից մեկն էր Շիրակի ջրանցքը, որը ոռոգում է Լենինականի և Ախուրյանի շրջաններում 11 հազար 700 հեկտար հող։

Ներկայումս Շիրակի ջրանցքով ոռոգվող տարածություններում արմատացվել է ջրովի շաքարի ճակնդեղի մշակույթը, որը ծառայելու է որպես հումքի բազա Համամլույում կառուցվող շաքարի գործարանի համար։

1925 թվին սկսվեց և 1928 թվին ավարտվեց Այգրլճի էլեկտրոջրհան կայանի շինարարությունը՝ Էջմիածնի շրջանի հողերը ոռոգելու համար։ Այդ ջրհան կայանի միջոցով ոռոգվում է 2.500 հեկտար տարածություն, որտեղ գլխավորապես ցանվում է բամբակ։

Կառուցված Սարդարաբատի փոքր ջրանցքը ոռոգում է շուրջ 18 հազար հեկտար հողամաս, ստեղծելով ջրային կայուն պայմաններ բերքատվության համար։ Այդ խոշոր ոռոգիչ միջոցառումը ընդլայնեց խաղողի, պտղատու այգիների տարածությունը և հումքի բազա ստեղծեց կոնսերվի արդյունաբերության համար։

1924 թվին սկսվեց Մեղրու շրջանի ջրանցքի կառուցումը՝ Կարճևան գյուղի հողերը ոռոգելու համար։ Այդ ջրանցքի հատուկ նշանակությունն այն է, որ նա կառուցվել է բնական շատ դժվարին պայմաններում։ Ներկայումս ջրանցքը ոռոգում է 300 հեկտար տարածություն։

Բացի այս խոշոր աշխատանքներից 1929—1930 թվերին կառուցվեցին փոքրիկ կարողությամբ ջրհան կայաններ Արտաշատի, Վեդու և Ջանֆիդասարի շրջաններում 1.800 հեկտար բամբակի հողեր ջրելու համար։

Պետք է նշել, որ Հայաստանի ջրային հարստությունները հնարավոր են դարձնում ոռոգել խոշոր մասիվներ, ինչպես նաև գետային կասկադներում կառուցել հիդրոկայաններ։ Էներգետիկայի կապակցումը ոռոգման հետ մեկ կոմպլեքսում հնարավոր է դարձ-

նում բավարարել թե՛ ինդուստրիայի և թե՛ գյուղատնտեսության ընդհանուր կարիքները։

Սևանա լճի ջրերը օգտագործվում են էներգետիկայի և ոռոգման համար, կազմելով մի հզոր միավորում ռեսպուբլիկայի ինդուստրիայի և գյուղատնտեսության զարգացման համար։

Սևանա լճի ջրերի օգտագործման վրա է հիմնվում Արարատյան դաշտավայրի ամայի հողերի ոռոգման խնդիրը։

Սևանա պրոբլեմի լուծման ասպարեզում առաջին ոռոգիչ կառուցումներից մեկն է Ստալինի անվան ջրանցքը, որը Արտաշատի, Վեդու, Ջանգիբասարի և Բերիայի շրջաններում ոռոգում է 22 հազար հեկտար տարածություն։ Այդ շրջաններում առաջատար կուլտուրաներ են հանդիսանում խաղողը, պտղատու այգիներն ու բամբակը։

Գյուղատնտեսությունը և ոռոգումը առանձնապես բուռն կերպով զարգացան 1938 թվից հետո։

1938 թվից մինչև 1940 թիվը ոռոգիչ օբեկտներից հատուկ ուշադրության արժանի են հետևյալ շինարարությունները՝ Նոր Դալմայի, Նալբանդի, Սիսիանի ջրանցքները, Արտաշատի և Ջանգիբասարի ջրհավաք ցամաքեցնող ցանցը։ Նոր Դալմայի ջրանցքը ոռոգում է երկու հազար հեկտար խաղողի և պտղատու այգիներ։ Այդ ոռոգման հիման վրա կառուցվել են չորս նոր կուլտուրական ավաններ, որտեղ բնակեցվել են լեռնային և նախալեռնային շրջանների բնակիչներ։ Ստեղծվում է մրգեղենի և խաղողի հզոր տնտեսություն, որը կոչված է բավարարելու ռեսպուբլիկայի մայրաքաղաքի բնակչության կարիքները։

Նալբանդի Միկոյանի անվան ջրանցքը ոռոգում է Սպիտակի շրջանում 2.650 հեկտար տարածություն։ Ոռոգվող հողերում շաքարի ճակնդեղը մտցվել է ցանքաշրջանառության մեջ։

Սիսիանի ջրանցքը կապահովի տեխնիկական մշա-



կույթների՝ հիմնականում ծխախոտի, հետագա աճի և կբավարարի անասնապահության կերի կարիքը։

Բացի հիշյալ ջրանցքներից այդ ժամանակաշրջանում կառուցվել են տեղական ջրերի վրա հիմնված (աղբյուրներ, գետակներ) ջրանցքներ։ Այդ ժամանակամիջոցում կատարված ոռոգիչ շինարարության հետևանքով ոռոգելի հողերի տարածությունը ավելացավ 13.100 հեկտարով։

ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թվի սեպտեմբերի պատմական որոշումը «Հայկական ՍՍՌ խաղողի ու պտղատու տնկիները և տեխնիկական մշակույթները զարգացնելու միջոցառումների մասին» բաց արեց լայն հեռանկարներ ոռոգիչ շինարարության համար։

Այդ որոշմամբ առաջադրանք տրվեց՝ մոտակա չորս տարիների ընթացքում ոռոգվող հողերի տարածությունը ավելացնել 44 հազար հեկտարով և յուրացնել նախկինում ոռոգված 14 հազար հեկտարը։

Այդ որոշումը իրագործելու համար 11 շրջանների հազարավոր կոլխոզնիկներ 1940 թվի աշնանից մեծ ոգևորությամբ սկսեցին սարքին Ջանգվի, Լոռու, Գյառնու, Նորքի և Աղյամանի ջրանցքների կառուցումը։ Բացի այդ ջրանցքներից 1941 թվի սկզբին սկըսվեց Թալինի ջրանցքի շինարարությունը՝ Հոկտեմբերյանի և Թալինի շրջաններում 34 հազար հեկտար տարածություն ոռոգելու համար։

Անհրաժեշտ է նշել, որ բացի ոռոգիչ շինարարությունից, ռեսպուբլիկայի ջրային օրգանները ամեն տարի տարել են աշխատանքներ ցանքատարածությունները, գյուղերը, ջրանցքները հեղեղաջրերի վնասակար ազդեցությունից պաշտպանելու համար։ 1932—1935 թվերին զգալի աշխատանքներ են կատարվել Զանգու գետի ափերին հողապատնեշներ կառուցելու համար։

Հայաստանի պայմաններում (հարթավայրեր՝ ստորերկրյա ջրերի բարձր մակարդակով և լեռնային

տարածություններ) գոյություն ունեցող ոռոգիչ սիստեմների ճիշտ շահագործումը վճռական նշանակություն ունի ջրովի գյուղատնտեսության համար։

Այս ասպարեզում կատարվել է զգալի աշխատանք մշակվող տարածության խոշորացման, ոռոգիչ սիստեմներում ջրի պլանային բաշխման ասպարեզում։ Մտցվել են ջրելու ավելի կատարյալ եղանակներ կոլխոզային տնտեսություններում ջուրը խնայողի կերպով օգտագործելու և մի շարք տեխնիկական միջոցառումներ ոռոգիչ սիստեմները բարելավելու համար։

Պատերազմի տարիներին ավարտվեց Լոռու ջրանցքը՝ 4.000 հեկտար տարածություն ոռոգելու համար, Մարտունու շրջանում Աղյամանի ջրանցքը՝ 1.700 հեկտար տարածություն ոռոգելու համար, Գառնիի ջրանցքի առաջին 12 կիլոմետրը 700 հեկտար ոռոգելու համար, Նորքի ջրանցքի առաջին տաս կիլոմետրը։ Այս վերջին ջրանցքի կառուցմանը մասնակցեցին նաև Երևան քաղաքի աշխատավորները։ Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում ոռոգվող տարածությունը ավելացավ 18 հազար հեկտարով։ Ոռոգման կամպանիան կատարվում էր բարձր մակարդակով, ապահովելով գյուղատնտեսական մշակույթների բերքատվության պետական առաջադրանքները։

Սովետական իշխանության տարիներին մեր երկիրը ծածկվեց ոռոգիչ ջրանցքների խիտ ցանցով, ջրային բոլոր ռեսուրսները իրենց բնական վիճակում օգտագործվում են ոռոգման համար։ Ջրի բոլոր աղբյուրներից յուրաքանչյուր տարի վերցվում է ավելի քան մեկ միլիարդ խորանարդ մետր ջուր, որով ոռոգվում են հազարավոր հեկտար խաղողի, պտղատու այգիներ, բամբակ, ծխախոտ, շաքարի ճակնդեղ, հացահատիկ և այլ մշակույթներ։

Ջրովի տարածությունները ըստ տարիների աճել են հետևյալ կերպ՝ 1913 թվին՝ 97 հազար հեկտար, 1919 թվին՝ 60,4 հազար հեկտար, 1937 թվին՝ 160,6 հազար հեկտար, 1946 թվին՝ 210 հազար հեկտար։



Ջրովի տարածությունը ավելի քան կրկնապատկվեց։

Ջրովի տարածություններում տարբեր մշակույթների աճը հետևյալն է՝ տեխնիկական մշակույթները աճել են 39 տոկոսով , հացահատիկային, բանջարանոցային մշակույթներն ու կերաբույսերը՝ 86 տոկոսով, խաղողի ու պտղատու այգիները՝ 120 տոկոսով։

26 տարվա ջրային տնտեսության ծախսերը կազմում են 237 միլիոն ռուբլի, որոնցից կապիտալ ներդրումները՝ 155 միլիոն ռուբլի։

Ավելի հոյակապ է ոռոգիչ շինարարության պրոբլեմը նոր հնգամյակում, որի աշխատանքներին լծվել են մեր շինարարները ոգևորված Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրական կամպանիայով։

ՆՈՒՐԻՋԱՆՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրի տեղակալ)

Ինժեներ՝ ԱՎԵՏՅԱՆ

(Պլանային–ֆինանսական բաժնի պետ)

— ◆ —

## ՈՌՈԳՈՒՄԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

*Մեր անծայրածիր հայրենիքի մյուս եղբայրական ժողովուրդների հետ մեկտեղ Սովետական Հայաստանի աշխատավորները քրտնաջան աշխատանք են կատարում ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի կենսագործման համար, որը նախատեսում է ուժեղ թափ ու վերելք մեր տնտեսության բոլոր ճյուղերում։ Մեծ վերելք է ապրելու գյուղատնտեսությունը, ընդարձակվելու է ցանքատարածությունը, բարձրացվելու է բերքատվությունը, ավելի քան 23 ու կես հազար հեկտարով ընդլայնվելու է Հայկական ՍՍՌ-ի ջրովի հողերի տարածությունը, որը հնարավորություն կտա ծաղկման նոր աստիճանի հասցնել հայահատիկի, տեխնիկական, բանջարաբոստանային կուլտուրաների մշակությունը։ Այդ հողերը կծածկվեն խաղողի որթերով, պտղատու այգիներով ու շաքարի ճակնդեղի պլանտացիաներով, որոնք հումքային խոշոր բազա են ստեղծելու նոր հնգամյակի այնպիսի նորակառույցների համար, ինչպիսիք են՝ Համամլվի շաքարի գործարանը, «Ներես» տիպի գինու գործարանը Աշտարակի շրջանում, կոնյակի նոր գործարանը Երևանում և մի շարք այլ գործարաններ ռեսպուբլիկայի այլ շրջաններում։*

*Նախատեսված 23 ու կես հազար հեկտար նոր ջրովի տարածությունները կստեղծվեն շնորհիվ այն բանի, որ հնգամյակի տարիներին իրենց լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվեն՝ Ստալինի անվան, Նորքի, Ստորին Զանգվի և Գյառնու խոշոր*



*ջրանցքները. իրագործվելու է Արազդայանի ամայի տափաստանի չորացման և ոռոգման աշխատանքները, ուժեղ թափով շարունակվելու է Թալինի խոշոր ջրանցքի շինարարությունը, կառուցվելու է Արփա լճի ջրամբարը, Կոտայքի ջրհան կայանը։ Կյանքի են կանչվելու բազմաթիվ այլ ոռոգիչ օբեկտներ, ջրանցքներ, ջրամբարներ և ջրհան կայաններ ռեսպուբլիկայի համարյա բոլոր շրջաններում։*

*Նոր հնգամյակում վերոհիշյալ բազմաթիվ նոր կառուցումների հետ միասին, պետք է հատուկ ուշադրություն նվիրվի գոյություն ունեցող ոռոգիչ սիստեմների տեխնիկական վիճակի բարելավմանը, դաշտերում ջրի ռացիոնալ օգտագործմանն ու ճիշտ բաշխմանը և ջրի կորստի նվազեցմանը։ Հնգամյակի տարիներին 10—15 տոկոսով բարձրացվելու է գործող սիստեմների կարողությունը։*

*Մեր ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հնգամյա պլանի օրենքի համաձայն հիշյալ աշխատանքների համար նոր հնգամյակում նախատեսվում է կատարել 90 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ։*

*Այս ամենից պարզ է, թե որքան վիթխարի աշխատանքներ են ծառացած մեր առաջ ոռոգման ասպարեզում։*

### ՍՏՈՐԻՆ ԶԱՆԳՎԻ ՋՐԱՆՑՔԸ

*Նոր հնգամյակի ջրաշինարարական խոշոր նորակառույցներից է ստորին Զանգվի ջրանցքը, որն սկիզբ առնելով Զանգու գետից Երևան քաղաքի սահմաններում և որպես ջրային աղբյուր ունենալով Սևան—Զանգվի կասկադի էլեկտրակայաններում արդեն գործադրված ջուրը, ձգվելու է ավելի քան 28,5 կիլոմետր երկարությամբ, իր ճանապարհին հյուրընկալելով Թերիայի և էջմիածնի շրջաններին ու իր վերջին կիլո-*

մետրներում 300 մետր երկարություն ունեցող խողովակաշարով կտրում-անցնում է Քասախ գետը և իր առատ ջրով փոխադրվում է նրա մյուս ափը։ Ջրանցքի վրա առկա են լինելու բազմաթիվ բարդ ու պարզ հիդրոտեխնիկական կառուցվածքներ, որոնք հնարավորություն են տալու ջրին շարունակել իր հանգիստ ընթացքը Հայաստանի անհանգիստ կտրտված ռելեֆով։

Այս կառուցվածքներից խոշորագույնը հանդիսանում է Զանգու գետի վրա ձգված ջրանցք-կամուրջը, որի աշխատանքները հիմնականում սկսվեցին և ավարտվեցին նոր հնգամյակի առաջին տարում։

Ջրանցքի աշխատանքները սկսված էին դեռևս 1940 թվին, սակայն թշնամու ուխտադրուժ հարձակումը մեր Հայրենիքի վրա ժամանակավորապես դադարեցրեց նրա շինարարական աշխատանքները, որը վերսկսվեց 1943 թ. և այժմս էլ մեծ թափով առաջ է տարվում։ Նրա ավարտումը հնարավորություն կտա Էջմիածնի և Զանգիբասարի շրջաններում ոռոգելի դարձնել ավելի քան 5000 հեկտար անջրդի հողեր, ինչպես և լրիվ ջրային ապահովվածություն կստեղծվի Էջմիածնի շրջանի 4000 հեկտար սակավաջուր հողերի համար։

Ինժեներական մտքի հեռատեսությունը չի մոռացել ջրանցքում ջրի պահեստի անհրաժեշտ պաշար նախատեսնել, հետագայում ջրանցքը շարունակելու դեպքում Հոկտեմբերյանի շրջանում ևս որոշ անջրդի հողեր ոռոգելու համար։ Ջրանցքի վրա նախատեսվում է ներդնել 26 միլիոն ռուբլի և ավարտել 1948թ.։ Ջրանցքով ոռոգվող հողային մասիվները հիմնականում ծածկվելու են բամբակի դաշտերով, պտղատու այգիներով, խաղողի որթերով և մի քանի տարի հետո այսօրվա այդ նույն կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, որոնք անում են հնարավոր ամեն ինչ ջրանցքը ժամանակին շահագործման հանձնելու համար, առատ հումք կտան մեր տեքստիլ, սննդի և համի արդյունաբերություններին։



## ԱՐԱԶԴԱՅԱՆԻ ՏԱՓԱՍՏԱՆԻ ՋՈՐԱՑՈՒՄԸ ԵՎ ՈՌՈԳՈՒՄԸ

Երևանից մոտ 50 կիլոմետր հեռավորության վրա է ընկած Արազդայանի եղեգնուտներով, ճահիճներով ու աղիացած հողերով պատված տափաստանը։

Նկատի ունենալով տափաստանի աշխարհագրական դիրքը, բարենպաստ հատկությունները, Արաքսի մոտիկությունը և այնտեղից անցնող երկաթգծի առկայությունը, պետք է չորացման և հետագայում ոռոգման միջոցով յուրացվի Արազդայանի տափաստանի 5000 հեկտար տարածությունը։

Հողերը ջրովի դարձնելու համար կառուցվելու ու վերակառուցվելու է գոյություն ունեցող և անօգտագործելի դարձած Արազդայանի ջրանցքը, որի ընդհանուր երկարությունը հասնում է մինչև 29կմ.։ Հասկանալի է, որ այս խոշոր ձեռնարկումները կատարելիս չի կարելի չմտածել մեծ թվով գործող ջրհան մեքենաների էլեկտրոֆիկացման մասին։

Վերոհիշյալ ձեռնարկումների համար ներդրվելու է ավելի քան 25 միլիոն ռուբլի։ Արազդայանի անապատը կծածկվի խաղողի և պտղատու ծառերի այգիներով, ճահիճներն ու աղուտները կդառնան ծաղկուն այգեստաններ, մեկընդմիշտ դուրս կշպրտվեն մալերիայի հիմնադիրները՝ մոծակները։ Մեր ճարտարագետների նախագծերով կկառուցվեն ու կհիմնադրվեն ավելի քան 7 նոր բնակելի կետեր՝ գեղեցիկ պարտեզներով ու լուսավոր տներով, կկառուցվեն նոր գործարաններ, որոնք կոչված կլինեն վերամշակելու տեղում ստացվող առատ գյուղատնտեսական հումքը, նամանավանդ խաղողի հատուկ տեսակը, որի համար այնքան նպաստավոր են տափաստանի հողային պայմանները։

## ՆՈՐՔԻ ՋՐԱՆՑՔԸ

Հնգամյակում է ավարտվելու այն մեծ ձեռնարկումը, որ սկսեց մեր մայրաքաղաքի բնակչությունը իր անձնական մասնակցությամբ Հայրենական պատերազմի օրերին։ Դա Նորքի ջրանցքի ժողովրդական շինարարությունն է։ Պատերազմի տարիներին շահագործման հանձնվեցին այդ ժողովրդական ջրանցքի առաջին 10 կիլոմետրերը։

Ջրանցքը սնվելու է Զանգու գետից և հոսելով ավելի քան 32 կիլոմետր, ոռոգելու է Կոտայքի, Բերիայի և Արտաշատի շրջանների հողերը, ինչպես և մերձ Երևանյան հողերը 2000 հեկտար տարածությամբ։ Նա մշտական ջրով ապահովելու է Երևան քաղաքի ավելի քան 1000 հեկտար սակավաջուր հողերը։ Ջրանցքը յուրահատուկ է յուր 2 խոշոր՝ Գետառի և Ջրվեժի ձորը կտրող անցնող ջրատար խողովակներով։ Ջրանցքի ավարտումը հնարավորություն կտա կանաչազարդել Երևան քաղաքը շրջանցող հյուսիս-արևմտյան սարալանջերը։ Նրանով ոռոգվող հողերում զարգանալու են պտղատու այգիների ու խաղողի որթի մշակույթները։

## ՍՏԱԼԻՆԻ ԱՆՎԱՆ ՋՐԱՆՑՔԸ

Հնգամյակի տարիներին իր նախագծային կարողությանն է հասնելու Ստալինի անվան ջրանցքը, որը շահագործման հանձնվելով դեռևս 1940 թվին ոռոգում է ավելի քան 22 հազար հեկտար հող Արտաշատի և Վեդու շրջաններում։ Մի շարք տեղերում կատարելով երեսպատում, վերափոխելով ժամանակավոր հիդրոտեխնիկական կառուցվածքները կայուն կառուցվածքներով, անց կացնելով բաժանարարների և ոռոգիչների ինժեներական տիպի ցանց և չորացնելով այդ շրջան-



ներում Արարատի գետափնյա հողերը, հնարավոր կլինի ավելացնել ոռոգելի տարածությունը 3900 հեկտարով։

## ԳՅԱՌՆՈՒ ՋՐԱՆՑՔԸ

Հնգամյակում ավարտվող Գյառնու ջրանցքի շնորհիվ ուժեղ աճ է ստանալու ծխախոտի մշակությունն ու խաղողագործությունը Կոտայքի շրջանում, որի հիմնական սնուցանողն է հանդիսանալու Գյառնի գետը և նրա մեջ թափվող բազմաթիվ աղբյուրները։ Ջրանցքի ընդհանուր երկարությունը լինելու է 32 կմ. ու ոռոգելու է 1500 հեկտար հող։ Դեռևս պատերազմի օրերին, շնորհիվ մեր կոլխոզնիկների աննկուն ջանքերի, նրա առաջին 6 կիլոմետրը իր ծանր կառուցվածքներով՝ 5 թունելներով հանձնվեց շահագործման և ջրովի դարձրեց Կոտայքի շրջանում 700 հեկտար հող, որտեղ ներկայումս մշակվում է ծխախոտ և հիմնադրվում են խաղողի այգիներ։ Ջրանցքը ամբողջությամբ շահագործման կհանձնվի 1948 թ.։

## ԱՐՓԱ ԼՃԻ ՋՐԱՄԲԱՐԸ

Սկսված է և հնգամյակի առաջիկա տարիներին կավարտվի Հայաստանի ջրամբարաշինարարության առջնեկը՝ Արփա լճի ջրամբարը (Ամասիայի շրջանում), որը կառուցվող 10 մետր բարձրությամբ բետոնյա պատվարի օգնությամբ Ախուրյանի ակունքը մեծացնելու է և վեր է ածելու ջրի մեծ պահեստի՝ 110 միլիոն խորանարդ մետր տարողությամբ։ Տարվա այն եղանակներին, երբ Ախուրյան գետում եղած ջուրը անբավարար է ոռոգելու համար Շիրակի տափաստանի հո-

ջերը, լրացուցիչ ջուր է մատակարարվելու նրան Շիրակի ջրանցքի միջոցով։ Հնարավորություն է ստեղծվելու հետագայում Ախուրյանի երկու կողմերում կառուցվող ջրանցքների օգնությամբ ոռոգել 10 հազար հեկտար հողային մասիվներ Ախուրյանի և Աղինի շրջաններում, ինչպես և ջուր մատակարարել Ախուրյան գետի վրա կառուցվող հիդրոկայաններին։ Արփա լճի ջրամբարի կառուցումը հնարավորություն կտա ավելի զարգացնել շաքարի ճակնդեղի մշակությունը վերոհիշյալ շրջաններում և հումքի մեծ բազա ստեղծել ավարտվող Համամլուի շաքարի գործարանի համար։

## ԹԱԼԻՆԻ ՋՐԱՆՑՔԸ

Արփա լճի շինարարությունը նախապատրաստելու է անհրաժեշտ կադրեր կառուցվող բազմաթիվ այլ ջրամբարների և նրանց գլուխ գործոց Ախուրյանի ջրամբարի համար, որի ջրային ռեսուրսների վրա գործող Թալինի ջրանցքի շինարարությունը վերսկսելով 1943 թ. շարունակվելու է նաև հնգամյակի ամբողջ ընթացքում։ Ջրանցքը իր երկու ճյուղերով ունենալու է 102 կիլոմետր երկարություն և ոռոգելու է 34 հազար հեկտար անջրդի հողեր Թալինի և Հոկտեմբերյանի շրջաններում։

Ջրանցքը իր սկզբնական մասում մոտ 7,6 կիլոմետր երկարությամբ անցնում է լեռնալանջով և ամբողջապես երեսապատվելու է, որից հետո անցնում է 1950 մետր երկարություն ունեցող թունելով։

Բացի հիշյալ 34 հազար հեկտար հողերի ջրովի դարձնելուց, որոնք հիմնականում դրվում են ծխախոտի, բամբակի, խաղողի և այլ տեխնիկական կուլտուրաների, ինչպես նաև հացահատիկային դաշտերի տակ, նա հնարավորություն կտա ջուր մատակարարել Թալինի



շրջանի շատ արոտատեղերի և զարկ կտա անասնաբուծության զարգացման։

## ԿՈՏԱՅՔԻ ՋՐՀԱՆ ԿԱՅԱՆԸ

Բոլոր այն հողերում, որոնք իրենց դիրքով ավելի բարձր են ընկած, քան նրանց ոռոգող ջրի աղբյուրը, հարկ է լինում դիմել ոռոգման մի այլ եղանակի՝ ջրհան կայանների օգնությանը։ Այդ նպատակին էլ ծառայելու է Կոտայքի ջրհան կայանը, որը կառուցվում է Քանաքեռգէսի ջրանցքի վրա ու ջուր է բարձրացնելու 80 մետրի վրա, ոռոգելու է Կոտայքի շրջանում մինչև օրս ջրի կարոտ 1.200 հեկտար հողերը, որոնք ծածկվելու են բացառապես ծխախոտով և խաղողի այգիներով։ Շինարարությունը ապրում է իր եռուն շրջանը և պետք է ավարտվի 1947 թ. ընթացքում։

Հիշյալ ջրանցքներն ու ջրամբարներն այն հիմնական ու խոշոր ջրաշինարարական աշխատանքներն են, որոնք ըստ հնգամյա պլանի օրենքի նախատեսվում է կատարել։

ԻՆԺԵՆԵՐ՝ ԹԻՐԼԻՄԵՋՅԱՆ

(Ջրային տնտեսության մինիստրության նախագծային վարչության ինժեներ)

— ❦ —

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԸ

*ՍՍՌՄ Կոնստիտուցիայում մատնանշված է, որ ամբողջ իշխանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին՝ հանձինս աշխատավորների դեպուտատների սովետների։ Սովետները մեր երկրում մասսայական կազմակերպություններ են, ներկայացուցչական օրգանները, որոնք վերից վար ընտրվում են աշխարհիս ամենադեմոկրատական սիստեմով։*

*Սովետական Միությունում գոյություն ունեն ամենադեմոկրատական կարգերն աշխարհում։ Այդ իսկական դեմոկրատիզմով ներծծված է Սովետական Միության ամբողջ քաղաքական կառուցվածքը, մեր երկրի ամբողջ հասարակական կյանքը։ Այդ դեմոկրատիայի մեջ արտացոլված են սովետական ժողովրդի վիթխարի նվաճումները՝ սոցիալիզմի կառուցումը մեր երկրում։*

*Սովետական պետության ընտրական սիստեմը կառուցված է սոցիալիզմի սկզբունքների վրա, որոնք իրականացված են մեր երկրում։*

*Սովետական ընտրական սիստեմի դեմոկրատիզմը երևում է «Մեր պրոֆմիութենական, արտադրական կուլտուրական, սպորտային և այլ բանվորական անհամար կազմակերպությունների ակտիվության մեջ, Սովետական Միության ամբողջ լայնածավալ տերիտորիայում, բազմամիլիոն սովետական գյուղացիության միացնող կոլխոզների ստեղծման մեջ, ֆաբրի-*



*կաներում և գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում, հանքահորերում ու երկաթուղիներում սոցիալիստական մրցության անշեղ աճման գործում— այս բոլորի մեջ երևում է իսկական ժողովրդական դեմոկրատիզմի ծաղկումը որը մեզ ծանոթ չի եղել հին ժամանակ և որը չի կարող լինել ճնշողների ու ճնշվածների դասակարգերի բաժանված ոչ մի այլ պետության մեջ» (Մոլոտով)։*

*Կապիտալիստական երկրների ընտրական սիստեմի հիմքում դրված է դասակարգային անտագոնիզմը, մարդու շահագործումը մարդու կողմից, արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը։ Այստեղից պարզ է, որ կապիտալիստական երկրներում գոյություն չունի իսկական դեմոկրատիա և չեն կարող լինել իսկական դեմոկրատական ընտրություններ։*

*Սովետական դեմոկրատիայի ակնառու փաստ է հանդիսանում այն, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները, ինչպես նաև այժմ նախապատրաստվող Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունները, կատարում են ընտրողները, ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։*

*Մեր ընտրությունների ընդհանուր լինելը պարզ երևում է այն փաստից, որ ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի, որի 18 տարին լրացել է, անկախ ռասայական պատկանելիությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից իրավունք ունի մասնակցելու Գերագույն Սովետի ընտրություններին։ Մեզ մոտ ընտրություններին չեն մասնակցում միայն խելագարները և այն անձինք, որոնք դատապարտված են դատարանի կողմից ընտրական իրավունքների զրկումով։*

*Այլ է ընտրությունների ընդհանուր լինել կապիտալիստական երկրներում։ Նրանց կոնստիտուցիանե-*

րը սովորաբար ազդարարում են ընդհանուր ընտրական իրավունքի մասին, մարդկանց իրավունքների մասին, բայց իրականում ընտրական սիստեմում մտցնում են բազմաթիվ սահմանափակումներ, որոնք ուղղված են աշխատավորների դեմ։ Այդ սահմանափակումներից է «գույքային ցենզը», ըստ որի ընտրողը պետք է տեր լինի որոշ սեփականության։ Գույքային ցենզ գոյություն ունի Կանադայում, ԱՄՆ-ում, Շվեդիայում և այլ երկրներում։ Անգլիայում պահանջվում է, որպեսզի ընտրողն ունենա սեփական կամ վարձով վերցված տուն։

Կապիտալիստական շատ երկրներում գոյություն ունի «նստակեցության ցենզ», ըստ որի ընտրողը որոշ բնակավայրում պետք է ապրի 6, 12, նույնիսկ 24 ամիս, որպեսզի ընտրելու իրավունք ունենա։ «Նստակեցության ցենզը» իր սուր ծայրով ուղղված է աշխատավորների դեմ, որոնք կապիտալիստական երկրներում մասսայական գործազրկության պայմաններում ստիպված են թափառել բնակավայրից բնակավայր՝ աշխատանք գտնելու համար։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում 13 միլիոն նեգրերի ընտրական իրավունքները սահմանափակված են, իսկ յոթ նահանգներում նրանք բոլորովին զրկված են ընտրական իրավունքից։ Հարավ-Աֆրիկյան Միության մեջ 5,5 միլիոն նեգրեր զրկված են ձայնի իրավունքից։

Կապիտալիստական մի շարք երկրներում գոյություն ունի նաև «կրթական ցենզ», «տարիքային ցենզ» և այլն։

Սովետական Միությունում չկան և չեն կարող լինել նման սահմանափակումներ։

Ըստ սովետական ընտրական սիստեմի, ընտրությունները հավասար են, յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն և քաղաքացիները ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով։ Կանայք



ընտրվում են և ընտրում տղամարդկանց հետ համահավասար։ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի առաջին գումարման դեպուտատների 25 տոկոսը կանայք լին։ Սովետական Բանակում գտնվող քաղաքացիները նույնպես ընտրվում են բոլոր քաղաքացիների հետ համահավասար։

Կապիտալիստական մի շարք երկրներում քաղաքացիների կես մասը կազմող կանայք զրկված են ընտրություններին մասնակցելու իրավունքից։ Ֆրանսիայում միայն վերջին կոնստիտուցիայով թույլատրվեց կանանց մասնակցել ընտրություններին, իսկ Հունաստանում մինչև օրս էլ կանայք զրկված են ընտրական իրավունքից։ Անգլիայում այն անձինք, որոնք ապրում են ընտրական մի շրջանում և ձեռնարկություններ ունեն մի այլ շրջանում օգտվում են 2—3 ձայնի իրավունքից։

Սովետական դեմոկրատիայի վառ արտահայտություններից մեկն էլ հանդիսանում է այն փաստը, որ մեզ մոտ ընտրություններն ուղղակի են։ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունները քաղաքացիները կատարում են անմիջականորեն՝ ուղղակի ընտրությունների միջոցով, իսկ ընտրված դեպուտատները հաշվետու են իրենց ընտրողների առաջ։

Ըստ բուրժուական ընտրական սիստեմի վերին պալատի դեպուտատների ընտրությունները բազմաստիճան են, այսինքն՝ ընտրողների ընտրված մարդիկ իրենց հերթին ընտրում են վերին պալատի դեպուտատներ, որոնք հաշվետու չեն սկզբնական ընտրողների առաջ։

Համաձայն մեր Կոնստիտուցիայի, Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունների ժամանակ քվեարկությունը գաղտնի է։ Այս հանգամանքը հնարավորություն է տալիս քաղաքացիներին ազատ ընտրություն կատարել՝ ընտրել իրենց ցանկացած թեկ-

նածուին։ Իսկ կապիտալիստական երկրներում գաղտնի քվեարկության շիրմայի հետևում կատարվում են շատ կեղծիքներ՝ ձայների գնում, քաղաքական և տնտեսական ճնշումներ և այլն։

ՍՍՌՄ-ի քաղաքացին անկախ այն բանից, թե որ ռեսպուբլիկայում է գտնվում, ունի իրավունք ընտրությունների մասնակցելու, ընտրելու և ընտրվելու բոլոր քաղաքացիների հետ համահավասար իրավունքներով։ Հայկական ՍՍՌ-ում նախապատրաստվող Գերագույն Սովետի ընտրություններին կարող են մասնակցել՝ ընտրել և ընտրվել ՍՍՌՄ-ի քաղաքացիները։ Մեզ մոտ ընտրություններին չեն կարող մասնակցել ու չեն կարող ընտրվել այլ օտարերկրյա պետությունների քաղաքացիները և հպատակները։

Սովետական ընտրական սիստեմի համաձայն, Գերագույն Սովետի ընտրությունների ժամանակ թեկնածուներն առաջադրվում են ըստ ընտրական օկրուգների, այսինքն՝ ամեն մի ընտրական օկրուգ առաջադրում է իր թեկնածուն։

Կապիտալիստական երկրներում դեմոկրատիա գոյություն ունի ունևոր փոքրամասնության համար ընդդեմ ընչազուրկ մեծամասնության։

«Բուրժուական կոնստիտուցիաները սովորաբար սահմանափակվում են քաղաքացիների ձևական իրավունքների ֆիքսացիայով, չհոգալով այդ իրավունքների կենսագործման պայմանների մասին, նրանց կենսագործման հնարավորության մասին, նրանց կենսագործման միջոցների մասին։ Խոսում են քաղաքացիների հավասարության մասին, բայց մոռանում են, որ չի կարող իսկական հավասարություն լինել տիրոջ ու բանվորի միջև, կալվածատիրոջ ու գյուղացու միջև, եթե առաջիններն ունեն հարստություն և քաղաքական կշիռ հասարակության մեջ, իսկ երկրորդները զրկված են թե՛ մեկից և թե՛ մյուսից, եթե առաջինները շահա-



գործողներ են, իսկ երկրորդները՝ շահագործվողներ։ Կամ դարձյալ. խոսում են խոսքի, ժողովների և մամուլի ազատության մասին, բայց մոռանում են, որ այդ բոլոր ազատությունները կարող են բանվոր դասակարգի համար դատարկ հնչյունի վերածվել, եթե նա զրկված է իր տրամադրության տակ ժողովների համար հարմար շենքեր, լավ տպարաններ, տպագրական թղթի բավականաչափ քանակություն և այլն ունենալու հնարավորությունից» (Ստալին)։

Միայն Սովետական Միության մեջ, ուր չկան տերեր և ընչազուրկներ, ուր չկա շահագործում, ուր մարդը ազատ է ամեն մի ճնշումից, կատարվում են իսկական դեմոկրատական ընտրություններ։ Սովետական քաղաքացին վստահ նայում է իր ապագային, նա կառուցում է կոմունիստական հասարակություն և նա ընտրություններին մասնակցում է մեծ ակտիվությամբ։ Այդ բանի վառ արտահայտությունն է հանդիսանում աշխատավորների շրջանում առաջացած քուռն խանդավառությունը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների նախօրյակին։ Աշխատավորական լայն մասսաները արտադրական հզոր վերելք են սկսել հանուն ստալինյան նոր հնգամյա պլանի կատարման և գերակատարման։

— o —

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՌԹԻՎ

Հայպետհրատը Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների կապակցությամբ լույս է ընծայել թարմ գրականություն՝ հայերեն, ռուսերեն և ադրբեջաներեն լեզուներով՝ 243 հազար ընդհանուր տիրաժով։

Լույս են տեսել՝

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.—ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին։

Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1946 թվի փետրվարի 9-ին։

Ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ճառը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում 1937 թվի դեկտեմբերի 11-ին։

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ.— Ինչ տվեց սովետական իշխանությունը աշխատավորներին։

Կանոնադրություն Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընտրությունների։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան (Հիմնական Օրենքը)։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիա (Հիմնական Օրենք)։

Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերա-



կանգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։

Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։

Վ. Ա. ԿԱՐՊԻՆՍԿԻ.— Ինչպես է կառավարվում մեր երկիրը։

Լույս են տեսել նաև 7 անուն պլակատներ 5 հազար տիրաժով և 11 անուն լոզունգներ 110 հազար ընդհանուր տիրաժով։

— Δ —

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 00040, պատվեր 1, տիրաժ 8.500
Ստորագրված է տպագրության 9 հունվարի, 1947 թ.

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից
Պոլիգրաֆ և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

